տրական գիծերու վրայ գործածուած կարգ մը օդանաւեր, որոնք թղթատարի պաշտօն կը կատարեն:

«Պրաւդա» այս առթիւ կը գրէ.

«Օտար մամուլին այն հաւաստումը թէ մենք 10,000 օդանաւ ունինք, ճիշտ չէ. բայց մեր օդային ուժը բաւական զօրաւոր է: Շարժանիւներ եւ օդանաւեր շինելու վրայ ենք, ու մեր օդանաւորդները որ Չինաստան, Ճափոն եւ Թուրքիա կ'երթան, կրնան կտրել նաեւ ովկիանոսը: Քիմիական հետազօտութիւնները շատ առաջ գացած են եւ իւրաքանչիւր կազային յարձակումի, կրնանք պատասխանել հակակազով, ու յետոյ հակայարձակում կատարել մեր սեփական հեղձուցիչ կազերով: Բացի ընդ-ծովեաներէ, հրասայլերէ եւ օդանաւերէ, շուտով պիտի ունենանք հակակազային հիմնարկութիւն մը:»

## Հելլէն դահլիճը հրաժարած

Աթէնքէն կը հեռագրեն 3 փետրուար թուականով.— Նախարարական Խորհուրդի այսօրուան նիստին մէջ վիճաբանութեան առարկայ դարձաւ այն հարցը թէ ո՛ր ընկերութեան պէտք է յանձնել Յունաստանի ճամբաներու շինութիւնը: Բոլոր Նախարարներն ալ համաձայն էին ընդունելու առաջարկները տան մը, որուն ետեւ կը գտնուի անգլեւամերիկեան լուրջ խմբակ մը: Հակառակ էր միայն երկրագործական Նախարար Փափանաստասիու, որ իր ընկերներու միաձայն քուէին առջեւ սպառնաց հրաժարիլ: Ասոր վրայ վարչապետ Զայիմիս նիստը դադրեցուց եւ յայտնեց թէ դահլիճին հրաժարականը պիտի ներկայացնէ Հանրապետութեան Նախագահին: Այս վերջինը ընդունեց հրաժարականը: Նոր դահլիճին կազմութիւնը պիտի յանձնուի Զայիմիսի:

## Իտալիա եւ Թունուզ

«Ճոռնալէ տ'Իտալիա» երկար յօդուած մը կը նուիրէ Թունուզի խնդրին, «որուն կարգադրութիւնը մեծապէս պիտի նպաստէ Ֆրանսայի եւ Իտալիոյ մերձեցման», կը ծանրանայ Իտալիոյ եւ Ֆրանսայի միջեւ գոյութիւն ունեցող համաձայնութեանց վրայ, որոնք, կ'ըսէ, Իտալիոյ նուազագոյն ծրագրին արտայայտութիւնն են միայն: Իտալիա չի լքեր այսպիսի ծրագիր մը, որ քաղաքական ո եւ է նպատակ չունի: Երեսուն տարի է ի վեր Իտալիա կ'ապացուցանէ թէ քաղաքական ո՛չ մէկ նկատում կը սնուցանէ Թունուզի հանդէպ:

«Մենք կ'ուզենք միայն, որ մեր զաւակները կարենան հաստատուիլ հոն, առանց կորսնցնելու իրենց հպատակութիւնը, որ անոնք ազատօրէն կարենան համախմբուիլ իրենց բարեգործական եւ կրթական հաստատութեանց շուրջ, ու ազատօրէն առեւտուր ընեն Մայր Հայրենիքին հետ: Այս նուազագոյն ծրագիրը, որուն գործադրութիւնը պէտք է ապահովուած ըլլար 1896ի համաձայնագրերով, պէտք է ի զօրու ըլլայ նաեւ միջերկրականեան Ափրիկէի ֆրանսական միւս գաղթապետութեանց մէջ եւս: Առանց այս նուազագոյն ծրագիրը ընդունելու, անկարելի է փորձել կամ յուսալ համաձայնութիւն կամ ընդհանուր գործակցութիւն մը՝ Ֆրանսայի եւ Իտալիոյ միջեւ»:

«Ճոռնալէ տ'Իտալիա» եզրակացնելով կ'ըսէ թէ՝ այս եւ միւս առկախ խնդիրներու կարգադրութիւնը Ֆրանսայի պիտի ապահովէ աջակցութիւնը 40 միլիոն Իտալացիներու, եւ պիտի դիւրացնէ Ափրիկէի մէջ հետապնդուած քաղաքակրթական եւ օգտագործման աշխատանքը:

## Ֆրանկօամերիկեան բարեկամութիւնը

Միացեալ Նահանգները իրենց ամբողջ պատմութեան մէջ միայն մէկ զինակցութեան դաշնագիր կնքած են, այն ալ Ֆրանսայի հետ՝ 1778 փետր. 6ին, այսինքն 150 տարի առաջ:

Այս պատմական դէպքը տօնելու համար, վաղը՝ Երկուշաբթի, Փարիզի եւ Նիւ Եորքի մէջ մասնաւոր խնջոյքներ պիտի սարքուին Ֆրանսա-Ամերիկա կոմիտէին կողմէ, մասնակցութեամբ մօտ երեսուն զանազան ուրիշ Միութեանց եւ պետական ներկայացուցիչներու:

Այս առթիւ պիտի նորոգուի նաեւ 1908ին Ֆրանսայի եւ Ամերիկայի միջեւ կնքուած բարեկամական դաշնագիրը:

## Աֆղանիստանի գնումները Ֆրանսայէն

Աֆղանիստանի թագաւորը՝ պաշտօնական ընդունելութիւնը վերջանալէ յետոյ, շարունակեց իր պտոյտները Փարիզի եւ արուարձաններուն մէջ: Վերջին քանի մը օրերը յատկացուց «գործ»ի: Ընդունեց առեւտրական եւ հանրօգուտ շինութեանց նախարարները, որոնց հետ երկարօրէն տեսակցեցաւ բոլոր այն խնդիրներու մասին, որոնցմով Ֆրանսա կրնար օգտակար ըլլալ Աֆղանիստանի: Տեսակցեցաւ նաեւ կրթական Նախարար Էրիոյի հետ՝ կրթական հարցերու մասին: Յետոյ գնաց Քրէօզօ, ուր կը գտնուին Շնէտէրի թնդանօթի եւ զէնքի գործարանները: Անկէ անցաւ Լիոն, որ մետաքսի եւ ճարտարարուեստի կեդրոնն է:

## Ֆրանսայի ելմտական խաղաղականութիւնը

Եօթ ժամ խօսելէ վերջ, Ուրբաթ իրիկուն Փուանքարէ վերջացուց իր ճառը դահլիճին ելմտական քաղաքականութեան մասին: Գովեստը ըրաւ աջ թէ ձախ բոլոր խմբակներուն,— նոյնիսկ ընկերվարականներուն,— որոնք աջակցած էին Ազգային Միութեան կառավարութեան: Յետոյ խօսելով ֆրանքի կայունացման մասին, ըսաւ թէ այս մասին երեք թելադրութիւններ կան, անմիջապէս կայունացնել եւ անգլիականը 150 ֆր.ի հաշուով, ներկայ սակով կայունացնել, կայունացումէն յետոյ վերարժեւորել: Այժմ պայմանները յարմար չեն այս երեք ձեւերէն ո եւ է մէկը ընդունելու համար: Երեսփ. ժողովի յառաջիկայ նստաշրջանին ժամանակը պիտի գայ այս խնդրով զբաղելու:

Ընկերվարական Լէոն Պլում քննադատեց Պլոք Նասիոնալի նախկին կառավարութիւնները, որ իրենց փոխառութիւններով ծանրացուցին ելմտացոյցը եւ այսօրուան տագնապին պատճառ դարձան:

Վիճաբանութիւնները պիտի շարունակուին Երեքշաբթի:

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ԹՈՒՐՔ երեսփոխան մը իր կինը փոխանակութեան ենթակայ ներկայացնելով յաջողած է 160,000 ոսկի արժէքով կալուածները տիրանալ Իզմիրի մէջ: Այս ապօրինութեան քննութեան առեն կարգ մը կարեւոր խնդիրներ եւս երեւան ելած են:

ՎԷՆԻԶԷԼՈՍ Աթէնքէն մեկնեցաւ եւ Վենետիկի ճամբով պիտի գայ Փարիզ, ուր պիտի մնայ վեց շաբաթ: Յետոյ Աթէնք դառնալով վերջնապէս հոն պիտի հաստատուի:




IMPRIMERIE - MASSIS - EDITIONS

208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. TEURNIER

Եուկոսլաւիա: Կայտա կ'ըսէ թէ գիրքը պաշտօնական վաւեբաթուղթ մըն է, զոր Իտալիա պէտք է նկատի առնէ, ինչպէս նկատի կ'առնէ ա'ն թէ Ֆրանսա գնդացիրներով, օդանաւերով եւ ռազմանիւթերով կ'ողողէ Եուկոսլաւիան:

Խնդրոյ առարկայ գիրքին անունն է «Ուղեցոյց Եուկոսլաւ զինուորներուն» եւ կը պարունակէ հետեւեալ խօսքերը.—

«Եուկոսլաւ զինուորներու պարտականութիւնն է օտար լուծէ փրկել իրենց եղբայրները: երբեք պէտք չէ մոռնանք, որ մեր եղբայրներէն 500,000 հոգի իտալական լուծի տակ կը հեծեն: մեր շատ մը գիւղերն ու քաղաքները հունգարական, պուլկարական եւ ռումանական տիրապետութեան տակ են: մեր ամբողջ հողամասը միացուած չէ մեր թագաւորութեան մէջ: Ամբողջ Իստրիա Գրադիսկան, Թրիեսթէ քաղաքը, Զառա եւ ներքնամասի կղզիները իտալական իշխանութեան տակ են, մինչ Ստիրիա Աւստրիոյ, Բերանժուի մէկ մասը՝ Հունգարիոյ եւ Բանատի արեւելեան մասը՝ Ռումանիոյ տիրապետութեան տակ կը գտնուին»:

## Թիթուլէսքուի պտոյտները

Ռումանիոյ արտաքին նախարարը, որ Հռոմ այցելելէ յետոյ Փարիզ եկած էր, կը շարունակէ իր տեսակցութիւնները արտաքին նախարար Պրիանի եւ ուրիշ նախարարներու հետ: Մամուլին ըրած յայտարարութեան մէջ, Թիթուլէսքու ըսաւ.

«Հռոմ գացի՝ Մուսոլինիի հետ կարծիքի փոխանակութիւն մը ունենալու համար: Կ'իւրացնեմ Ծերակոյտին մէջ Պրիանի ըրած յայտարարութիւնները. «Իտալիոյ բարեկամութիւնը կ'ուզենք՝ սրտագին ու եղբայրական համաձայնութեամբ մը ապահովելու համար մեր փոխադարձ շահերը»: Ռումանիա դաշնակից է Ֆրանսայի եւ Եուկոսլաւիոյ: Ամէն բան որ կապ ունի Իտալիոյ, Եուկոսլաւիոյ եւ Ֆրանսայի միջեւ համաձայնութիւն մը առաջ բերելու խնդրին հետ, մեծապէս կը շահագրգռէ Ռումանիան: Պարտք կը զգամ յարգանքով յիշել Իտալիոյ խաղաղասէր ոգին և աշխատանքի նուիրումը: Ռումանիա մեծ շահ ունի իր չորս կողմը բարեկամական ցանց մը հիւսելու, իր զինակցութիւնները ամրացնելու եւ եւրոպական «զօյավիճակ»ը պահպանելու համար: Ո'րքան խաղաղին հին թշնամութիւնները, այնքան նոր բարեկամութիւններ պիտի գտնէ Ռումանիա, որքան զարգանան հին և բնական բարեկամութիւնները, այնքան պիտի լաւանան Ֆրանքեւռումէն յարաբերութիւնները»:

Թիթուլէսքու Ժընեւի մէջ Ազգերու Դաշնակցութեան Խորհուրդին մասնակցելէ վերջ պիտի անցնի Պերլին, յետոյ Պելկրատ: Մարտի կիսուն պիտի դառնայ Պուքրէշ, ուր Փոքր Համաձայնութեան արտաքին Նախարարները խորհրդաժով պիտի գումարեն:

## Դատական ընդդիմադիրները

«Պրաւդա» կը գրէ թէ Տրոցկին եւ ընկերները Թուրքաստան եւ Սիպերիա աքսորուելէն ի վեր, 3068 ընդդիմադիրներ համայնավար կուսակցութեան փարախը վերադարձած են: «Կուսակցութիւնը կը փափաքի որ զղջացող ընկերները վերադառնան», կ'ըսէ Մոսկուայի պաշտօնաթերթը:

## Ցուրտը Ռուսիոյ մէջ

Մոսկուայէն կը հեռագրեն.— Ամբողջ Ռուսիոյ մէջ սարսափելի ցուրտ կ'ընէ: Ջերմաչափը Մոսկուայի մէջ 0էն վար 25, Սիպերիոյ մէջ — 45 աստիճան ցոյց կուտայ: Սառնաշունչ հով մը կը փչէ Հարաւ. Ուկրայնիոյ եւ Կովկասի վրայ, ձիւնամրրիկ կը տիրէ Օտեսայի մէջ, ուր երթեւեկը դադրած է և երկաթուղագիծերը գոցուած են:

Սաստիկ փոթորիկ կայ Սեւ եւ Կասպից ծովերուն վրայ. շատ մը նաւաբեկումներու լուրեր կը հասնին: Ո'չ մէկ նաւ կը մեկնի նաւահանգիստներէն: Սեւաստապոլ-Մոսկուա ճեպընթացը 45 ժամ յապաղումով հասաւ: Փոթորիկի աւերներուն մասին լիակատար տեղեկութիւն չկայ, որովհետեւ գրեթէ ամէն կողմ հեռագրի եւ հեռաձայնի թելերը քանդուած են:

Ֆինլանտայի ծոցին մէջ տիրող փոթորիկին պատճառով, Դուգակիի մօտ, եզերքէն քշուեցաւ սառոյցի հսկայ զանգուած մը, որուն վրայ կային 209 ձկնորսներ: Հետազօտութեան համար ղրկուած օդանաւեր կը հաղորդեն թէ սառնակոյտը կը յառաջանայ դէպի բաց ծով: Սառնաբեկ նաւ մը ղրկուեցաւ տեղւոյն վրայ:

## Յունաստանի քաղաքական կացութիւնը

Հելլէն նախարարական տագնապը կարելի չեղաւ լուծել: Յունաստանի կացութեան մասին լուրերը վրդովիչ են: Կ'ըսուի թէ զօր. Փանկալոսի կողմնակիցները կը շահագործեն գիւղացիներու դժգոհութիւնը՝ յեղափոխական շարժում մը առաջ բերելու համար ի նպաստ իրենց պետին. զինուորական պետերը բացէ ի բաց միջամուխ կ'ըլլան քաղաքական տագնապին, միւս կողմէ Մեթաքսաս չի կրնար միացեալ դահլիճ մը կազմել:

Զինուորականները կը յայտնեն թէ իրենք պիտի հակառակին ո եւ է կառավարութեան, որ բաղկացած չպիտի ըլլայ մասամբ վէնիզէլոսեաններէ՝ վարչապետութեամբ Փափանասթասիուի: Միւս կողմէ Մեթաքսաս կը յայտարարէ թէ չի կրնար գործակցիլ Փափանասթասիուի հետ, քանի որ նախարարական տագնապը առաջ եկաւ անոր ընդդիմութեան պատճառաւ: Նոյն իմաստով կը խօսի նաեւ Միխալաքոփուլօս:

Այս պայմաններուն տակ անխուսափելի կը նկատուի խորհրդարանին լուծումը եւ նոր ընտրութիւններ կատարուիլը:

## ՄԱՆՐ ԼՈՒՐԵՐ

ՇԹՐԷԶՄԱՆ, Գերմանիոյ արտաքին նախարարը Ժընեւի ճամբով հասաւ ֆրանսական Ռիվիէրա, ուր պիտի մնայ մինչեւ Ազգերու Դաշնակցութեան Խորհուրդին Մարտի նստաշրջանը:

ՀԱՄԱՅՆԱՎԱՐ երեսփոխան Մարթի, որ Սանթէի բանտը կը գտնուի, Փետր. 10ին պիտի փոխադրուի Թուլոնի բանտը: Մարթի անցեալ ամառ Նիմի մէկ թերթին մէջ յօդուած մը հրատարակած էր՝ ապստամբութեան գրգռելով զինուորականները: Այս պատճառով պիտի դատուի Թուլոնի դատարանին առջեւ:

ԱՖՂԱՆԻՍՏԱՆԻ թագաւորը առջի օր այցելեց Վէրսայլ՝ Սաթորիի բանակատեղին: Այս առթիւ հետաքրքիր ռազմափորձ կատարեցին յարձակող հրասայլեր: Կէսօրէն վերջ այցելեց Կեղր. վարժարանը, ուր Աֆղան ուսանողներ պիտի ղրկէ: Երէկ ընդունելութիւն կատարուեցաւ Ֆրանս. Օրիան ընկերութեան կողմէ: Իրիկունը Փալէ տ'Օրսէյի մէջ թագաւորն ու թագուհին հացկերոյթ տուին Փարիզի Աֆղան գաղութին:
























IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. TEURNIER

կրօնափոխ Ճէմիլէն կոչուեցաւ Լիւպա, որ կը նշանակէ Սիրուհի։ Այս երիտասարդ Թրքուհին ամուսնացաւ Լօպօմիր անուն պուլկար երիտասարդի մը հետ։ Ճէմիլէ, առտուն կանուխ հարսենական ճերմակ զգեստները հագաւ եւ իր սեւազգեստ փեսին թեւը մտնելով եկեղեցի գնաց։ Հոն, իր պաշտօնական հագուստներով կը սպասէր Պուլկարներու քահանայապետը, որ հետեւեալ հարցումը բրաւ.

— Բռնութեան հետեւանքո՞վ թէ քու ազատ կամքովդ է որ Աստուածը չճանչցող Մուհամմէտի կրօնքէն կը հրաժարիս եւ կ'ընդունիս կրօնքը Յիսուսի, որ զԱստուած կը ճանչնայ։

— Իմ ազատ կամքովս . . . :

Կրօնական արարողութիւններէն յետոյ Նորապսակ ամոլը եկեղեցիէն դուրս ելաւ եւ մասնաւոր կառքերով շրջեցաւ քաղաքին գլխաւոր փողոցները, իր ետեւը ունենալով հարսնեւորներու եւ հրաւիրեալներու հոծ բազմութիւն մը։ Ամբողջ քաղաքը ցնծութեան մէջ էր. ամէն կողմ, ժողովուրդը կը ծափահարէր Նորապսակ ամոլը. եկեղեցիներու զանգակները կը ղօղանջէին եւ «կեցցէ՛» աղաղակները օդը կը թնդացնէին։

Սօն Սաաթ, որ այս լուրերը կուտայ, կ'աւելցնէ. «Սոֆիացիներուն «կեցցէ՛» աղաղակներուն կը պատասխանենք.

— Անկցի՛ք, պոռալով։

«Ութրօ» թերթը կ'ըսէ թէ, Նորապսակ ամոլը Սամաքոֆ մեկնած է, մեղրալուսինը անցնելու համար։ Սամաքոֆի ժողովուրդը խանդավառ ընդունելութիւն մը ըրած է Նորապսակներուն եւ օրերով զուարճացած ու տօնած է այս ազգային տօնը։

«Սօն Սաաթ» քննութիւն կատարելով տեղեկացած է թէ, Ճէմիլէ պուլկարաբնակ հարուստ Թուրքի մը՝ Իպրահիմ պէյի աղջիկն է որ Սոֆիայի համալսարանին գրականութեան ճիւղը աւարտելէ յետոյ, ուսուցչական պաշտօն վարած է Ֆիլիպէի Թրքական վարժարանին մէջ։ Պէտք չենք տեսներ մասնաւոր խորհրդածութիւն ընելու, կ'ըսէ Թուրք թերթը, միայն կ'ըսե՛նք.

— Աստուած պատիժը տայ . . . :

## Պալքանեան Եւրոպա հեռաձայնով

Պուտափէշթ - Պելկրատ - Սոֆիա - Պոլիս հեռաձայնի գիծ մը հաստատելու համար՝ ընկերութիւն մը դիմում կատարած է յիշեալ երկիրներուն եւ բանակցութիւններ կը կատարէ։ Պատերազմի ընթացքին, Գերմաններուն կողմէ հեռաձայնի գիծ մը հաստատուած էր արդէն Պոլսոյ եւ Պերլինի միջեւ, այնպէս որ Պոլսոյ համար կարելի կը նկատուի՛ եղած առաջարկին գործադրութիւնը։ Գիծը հաստատուելու պարագային, պիտի կապուի նաեւ Էնկիւրիի թելին, այնպէս որ չորս մայրաքաղաքները իրարու միացած պիտի ըլլան։

## Թուրքիա կ'ընդունի մեթրական դրութիւնը

Էնկիւրիի տնտեսական գործավարութիւնը Գործավարներու Խորհուրդին ներկայացուցած է չափերու օրինագիծը՝ 17 յօդուածներէ բաղկացած։ Այս օրինագծին համաձայն, Թուրքիոյ մէջ գործածուած չափերու համար «մեթրական դրութիւնը» հիմ կ'ընդունուի։ Նոյնութեամբ կը մնան դրամի եւ գոհարեղէններու համար կիրարկուած կշիռն ու «այար»ը։ Ամէն տեսակի առեւտրական ինչպէս նաեւ կալուածական գործերու մէջ մեթրական դրութեան հիման վրայ պատրաստուած չափեր պիտի գործածուին։ Ասոնցմէ դուրս չափերու գործածութիւնը արգիլուած է։ Թրքական մեթրի եւ քիլոկրամի բաժանումները Միջազգային Չափերու Վարչութեան կողմէ ճշդուած ձեւին նոյնը պիտի ըլլայ։ Ոչ ոք չճշդուած եւ չկնքուած չափեր եւ գործիքներ պիտի կրնայ գործածել ու ծախել։

## Մարթիի նոր դատապարտութիւնը

Թուլոնի Պատժադատ Ատեանը երկու տարի բանտարկութեան եւ 2000 ֆրանք տուգանքի դատապարտեց համայնավար երեսփոխան Անտրէ Մարթին, որ զինուորները անհնազանդութեան հրաւիրող յօդուածներ հրատարակած էր Նիմի «Լա Փրովանս Փէյզան է Ուվրիէր» թերթին մէջ։ Այս թերթը բաժնուած է Թուլոնի ծովային զինուորներուն։ Իր պաշտպանողականին մէջ Մարթի խիստ յարձակումներ բրաւ նախարարներուն դէմ։ Իր պաշտան փաստաբանը Անտրէ Պէրթօն երկար ճառ մը խօսելով ջատագովեց չինական յեղափոխութիւնը։

Դատավարութենէն վերջ, Մարթի հսկողութեան տակ փաբիզ բերուելով կրկին Սանթէի բանտը դրուեցաւ։







































## Հ. Յ. Դ.

Ալֆօրվիլի «Սարգիս Մինասեան» ենթակոմիտէի ժողովը այսօր Կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին ծանօթ հաւաքատեղին։

Ներկայ պիտի ըլլան Շրջ. Կոմիտէի անդամները։

Լիոնի «Կայծակ» խումբի ընկերները ժողովի կը հրաւիրուին 15 Փետր. Դշ. երեկոյ ժամը 8.30ին, Գրադարանի սրահը։

## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ժող. Համալսարանի վարչութիւնը, այսօր Կիրակի ժամը 11ին ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր անդամ-Միութիւններու ներկայացուցիչները։ Կարեւոր օրակարգ։

## ԺԱՄԱՆԱԿԱՑՈՅՑ ՍԱՆԱՍԱՐԵԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆԻ

Այս առաւօտ Ֆլօրիայի մէջ ժամը 10ին, Ֆրանսերէն (Դաւիթ - Բէկ)։



ՍՊԱՌՆԱԼԻՔԸ
LA MENACE
?





IMPRIMERIE - MASSIS - ÉDITIONS
208bis, Rue Lafayette Paris (10)

Le Gérant: H. TEURNIER

